

# ԳԱԶԵԼ

ԵՓՐԱՔՍՅԱ ԱՉԱՏՅԱՆ

**Գարունն եկավ, մայիսն եկավ հազար գույնի**
**ծաղիկներով,**
**Երգով լցրեց, խինդով լցրեց դաշտերը մեր**
**շող ու շաղոտ,**
**Մայր ու մանուկ, ծեր ու ջահել հաղթական**
**ու կուռ շարքերով**
**Շքերթի են ելել ահա մայիսմեկյան այս առավոտ:**

## ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

ԳԵՎՈՐԳ ԱՎՉՅԱՆ

Աղբյուրներ են մարդիկ կյանքում,
Աղբյուրների նման զնգում
Եվ անցնում են լուռ,
Հեռանում են հաճախ անդարձ,
Ավազի մեջ ասես սուզված
Մի կաթիլ պաղ ջուր:

Բայց մի բան կա երանավետ,
Որով պիտի պահենք հավետ
Անուններն այդ թանկ.
Աղբյուրներով պահենք սրտանց,
Թող կարկաչեն ձայնով նրանց
Աղբյուրները զանգ:

Պահենք ընկած հերոսներին,
Որ հաղթանակ երկրիս բերին
Գրոհով իրենց,
Լսենք նրանց երգը բարի
Մեր զովաշունչ աղբյուրների
Ղողանջների մեջ:

Որպես անկեղծ երգ ու գարուն
Պահենք նրանց հանդում, սարում՝
Բուրմունքի մեջ ծով,
Հիշենք կռվի օրերը հին
Եվ հյուր գնանք աղբյուրներին
Մեր աղ ու հացով:

Աղբյուրները չեն ցամաքում,
Զրնգում են նրանք անքուն
Ամառ ու ձմեռ.
Թող նրանց պես ու նրանց հետ
Մեր սրտերում ապրեն հավետ
Հերոսները մեր:

Մոսկվա... 1916 թվականի աշնանային մի ցուրտ երեկո էր: Միխելսոնի խոշորագույն մետաղամշակման գործարանում փականագործ Ուվարովի տանը «տոնախմբության» պատրվակի տակ հավաքված, նույն գործարանի ինը բանվորներ սպասողական վիճակի մեջ էին:

— Լսի՛ր, Անդրեյ, մի բան պատահած չլինի՞ հանկարծ, կարծես ուշանում է,— Ուվարովին է դիմում հավաքվածներից մեկը,— ախր, ամեն տեղ վխտում են այդ անիծված ոստիկանները:

— Բերանդ բարի բաց արա, ա՛յ տղա, ինչեր ես խոսում, նախ դեռ ժամանակ կա և բացի այդ,— ասում է Անդրեյը,— մի՛ նայեք նրա տարիքին, շատ խելացի և հմուտ աղջիկ է երևում:

Դռան պայմանական թակոցը ընդհատում է խոսակցությունը: Ներս է մտնում, մի քիչ շփոթված, սև և խոհուն աչքերին պենսնե դրած, նրբիրան ու սլացիկ, 19-ամյա հայ աղջիկը՝ Լուսիկ Լիսինյանը:

— Բարև ձեզ, ընկերներ,— ասում է նա:

— Բարի եկաք, ընկեր Լյուսյա,— համարյա միաձայն ասում են երիտասարդ և տարեց բանվորները:

Լուսիկը բանվորների հետ պարզ ու մտերիմ զրույց

## Լուսիկ

է անցկացնում: Նա առաջին հերթին բացատրում է Լենինի հոդվածը՝ պրոլետարիատի զինվելու անհրաժեշտության մասին, իսկ հետո.

— Մենք պետք է լավ գիտենանք,— ասում է նա,— թե ինչն է մեր պայքարի նպատակը, և միշտ պատրաստ լինենք այն իրականացնելու համար: Հարկավոր է լայն մասսաներին ինքնագիտակցության բերել: Անհրաժեշտ է նաև մեր խմբի մեջ ընդգրկել գործարանի նռնակների պատրաստման տեղամասի առաջավոր բանվորներին: Պրոլետարիատին զենք է հարկավոր...

Անդրեյը լսում է ու զարմանում.— Այսքան ուժ ու եռանդ որտեղի՞ց է քնքուշ ու նուրբ այս աղջկա մեջ,— մտածում է նա:

# Մ Ա Յ Ի Ս Մ Ե Կ Յ Ա Ն

Աշխատավոր մարդն է անցնում այս փողոցով
լայն ու ազատ,
Փողփողում են ալեծածան դրոշները մեր փառավոր,
Երգում ենք մենք խաղաղ կյանքի, աշխատանքի
երգը ազատ,
Որ միշտ շողա արևը վառ մայիսմեկյան
այս առավոտ:

Աշխատանքով մենք կոփեցինք խաղաղության
մեծ դարբնոցում
Ողջ մարդկության կյանքի ճամփան, բախտի
ճամփան մեր արևոտ,
Որ մանկիկը հանգիստ քնի, խաղաղ քնի օրորոցում,
Ու մեծանա, ժպտա անհոգ մայիսմեկյան
այս առավոտ...

50 ՏԱՐԻ







Իսկ Իվանը ոգևորված դիմում է Լուսիկին.

— Հանգիստ եղեք, ընկեր Լյուսյա, մենք էլ ուրիշներին կհասցնենք ձեր բերած թարմ խոսքը: Իսկ նրանց ների տեղամասում շատ լավ տղաներ կան, նրանք անպայմա՛ն կմիանան մեզ:

Այսպես սկսվեց Միխելսոնի գործարանի, առաջին խմբակի առաջին պարապմունքը, որը 1917 թվականի գարնանը դարձավ առաջին կոմերիտական բջիջը, որի ղեկավարն ու կազմակերպիչն էր Լուսիկը:

...Շատ չէր անցել այն օրերից, երբ Լուսիկը դեռ սովորում էր Թիֆլիսի գիմնազիայում և այնտեղ էլ

Մի օր, մաթեմատիկայի ստուգողական գրավոր աշխատանքի ժամանակ, երբ Լուսիկը վարժ կերպով լուծում էր առաջադրված խնդիրը, հանկարծ նկատում է, որ դասարանի մեծ մասը չի գրում: «Չեն հասկացել, բարդ է»,—վայրկենապես մտածեց նա ու ցած դնելով գրիչը, դիմեց ուսուցչին.

— Խնդիրն անհասկանալի է, հրաժարվում եմ գրավորից:

— Դե՛հ, ինչ արած,— ասաց ուսուցիչը,— եթե դասարանի «մաթեմատիկուսի» համար անհասկանալի

# Լիսինյան

բոլոր աշակերտների սիրելին ու խորհրդատուն էր համարվում: Նրա մականունը «մաթեմատիկոս» էին դրել, որովհետև նա շատ էր սիրում և բոլորից լավ գիտեր այդ առարկան: Եվ ոչ միայն այդ առարկան. պատմության դասին նա «պատմաբան» էր, իսկ գրականության դասին՝ «գրականագետ»: Նրան ծանոթ էր աշխարհի ողջ դասական գրականությունը: Դեռ «Ուսուցիչների ընկերության դպրոցում» սովորելիս նա արդեն կարդացել էր Հոմերոսի ու Սոֆոկլեսի, Գյոթեի ու Բայրոնի, Չերնիշևսկու, Գերցենի ու Դոբրոլյուբովի, Գոգոլի ու Շևչենկոյի ստեղծագործությունները, իսկ գիմնազիայում նա կարդում էր Մարքսի «Կապիտալը» և մարքսիստական գաղտնի խմբակի անդամ էր:

է, ուրեմն խնդիրը բարդ է, գրավորը չեղյալ եմ համարում:

Լուսիկը փրկելով դասընկերներին, դասի վերջում գրատախտակի մոտ բացատրեց նրանց անհասկանալի խնդիրը:

Կրթությունը շարունակելու և ազատության պայքարին ակտիվորեն մասնակցելու բուռն տենչով Լուսիկը գալիս է Մոսկվա և ընդունվում առևտրի ինստիտուտ...

Թեև Լուսիկի հեղափոխական գործունեությունը սկսվել էր դեռ մանկուց, երբ իր քրոջ հետ այս ու այն կողմ թաքնվելով, Թիֆլիսի պատերին թռուցիկներ էր փակցնում, սակայն նա իր քաղաքական պայքարի սկիզբը համարեց Միխելսոնի գործարանի խմբակի

առաջին պարապմունքը, որովհետև այդ կարևոր գործը նրան հանձնարարել էր կոմիտեն: Այնտեղ նրան ասել էին.

— Դու պետք է Միխելսոնի գործարանում խմբակ կազմակերպես, դա շատ կարևոր գործ է...

Լարված աշխատանքը, վատ սնունդը ծանր էին ազդում Լուսիկի առողջության վրա, և նա որոշում է մեկնել Թիֆլիս, իր հարազատների մոտ մի քիչ հանգստանալու: Բայց հենց որ լսում է Լենինի Ապրիլյան թեզիսների մասին, որոշումը փոխում ու մի նամակ է գրում քրոջը:

«Անահիտ, ջանիկս, մի՛ բարկանա, որ փոխել եմ որոշումս, եթե իմանայիք, թե ինչպես եմ զգում ձեր բացակայությունը, թե ինչ գնով եմ հրաժարվում ձեզ տեսնելու հնարավորությունից... Ես արդեն պատրաստվել էի գալու, երբ պարզվեց, որ կարող եմ մասնակցել Պետերբուրգում կայանալիք սոցիալ-դեմոկրատների համագումարին, որտեղ կլինի Լենինը: Անհրաժեշտ է, որ ես լսեմ նրան, իսկ վերադառնալուց հետո, պիտի մեկնեմ բանվորական վայրեր՝ ագիտացիայի ու պրոպագանդայի»:

Անցան ամիսներ... Եկավ փոթորկալի հոկտեմբերը: Ամենուրեք գործադուլներ, մասսայական ցույցեր, միտինգներ... համարյա ամբողջ Զամոսկվորեչիեն ճանաչում էր Լուսիկին: Հարուստ գիտելիքներով զինված, պարզ ու մատչելի ելույթներով, նա ոչ միայն նվաճել էր Միխելսոնի գործարանի խմբակի անդամների համակրանքը, այլև նույն հաջողությամբ մեծ



խմբակներ էր կազմակերպել «Բրոկար» և Դանիլովյան մանուֆակտուրայի գործարաններում:

Հոկտեմբերի 28-ին անձրևային երեկո էր: Անթափանց խավարը իր քողի տակ էր առել պատերի ու մուտքերի ետևում թաքնված ոստիկաններին ու զինված յունկերներին: Սարսափն էր թևածում ամենուր: Ահա այդ ուշ ու վտանգավոր պահին էր, որ Լուսիկը հոգնած, քաղցած ու անձրևից թրջված տուն էր վերադառնում:

Տանը մի պահ հանգստանալուց ու մտքերն ամփոփելուց հետո, նա մի ջերմ նամակ գրեց հարազատներին:

«...Վերջապես ես տանն եմ, թեյ կխմեմ ու կպառկեմ: Ամբողջ օրը մանն եմ եկել, երեք միտինգ եմ անցկացրել գործարաններում, կարմիր խաչ եմ կազմակերպել երիտասարդական միությունում, գնացել եմ բանվորների դեպուտատների սովետ: Գիշերը մութն է, անձրև է գալիս: Գուցե այս գիշեր սկսվեն մարտերը:

Թանկագին մայրիկ, դու ինձ համար մի՛ հուզվիր, ես ոչ մի վտանգավոր տեղ չեմ լինի, կամ կնստեմ հոսպիտալում, կամ կլինեմ սովետում... Անտեղի փողոց չեմ ելնի, նույնիսկ գործարան այլևս չեմ գնալու, արդեն բոլորին իմաց եմ տվել դրության մասին: Ամուր համբուրում եմ: Առողջությունս էլ չի վատանում, այլ ընդհակառակը... Դարձյալ բոլորիդ համբուրում եմ քնիցս առաջ: Ինձ համար չանհանգստանաք:

Ձեր Լյուսյա»:

Առավոտյան Նուսիկը նետվեց պայքարի հորձանուտը:

Նա մեկ որպես գթության քույր վերքեր էր կապում ու վիրավորներ տեղափոխում, մեկ որպես կապավոր, պճնամոլ օրիորդի զգեստներ հագած, երեսին քող գցած, համարձակ կերպով անցնելով յունկերների մոտով, զեկույցներ ու հրամաններ էր տեղ հասցնում ու մեկ էլ զենքը ձեռքին մարտնչում էր առաջին շարքերում, իր սիրելի միխելսոնցիների կողքին: Եվ երբ նոյեմբերի 1-ի առավոտյան, թաց ու ցուրտ խրամատներում, հոգնած ու հուսաբեկ կարմիր գվարդիականների փամփուշտը վերջանալու վրա էր, Լուսիկը նետվում է դեպի ռազմա-հեղափոխական կոմիտեի շտաբը:

— Օստոժենկոյում դրությունը շատ լուրջ է: Անհրաժեշտ է անմիջապես փամփուշտ հասցնել,— ասում է նա շտաբի պետին և խնդրում, որ թույլ տան ինքը տանի:

— Բայց, Լուսիկ, դա շատ վտանգավոր է, թշնամին արդեն նկատած կլինի ձեզ:

— Հեղափոխության համար մեռնելն իմ իրավունքն է,— վճռականորեն պատասխանում է քաջարի աղջիկը:

Ամեն տեսակի հնարամտության դիմելով, նա կարողանում է փամփուշտերը տեղ հասցնել, բայց հենց այն պահին, երբ նետվում է փրկելու մի վիրավոր պատանու՝ թշնամու գնդակից ինքն էլ ընկնում է նրա կողքին:

Եվ այդ անձնուրաց հայուհու, առաջին կոմերիտուհու անունը գրվեց Մեծ Հոկտեմբերի մարտերում ընկած անմահ մարտիկների անվան կողքին:

ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆ





# ԼԱՎ ՕՐԻ՛ՆԱԿ

ՇԱՀԵՆ ԽԱԽԻԿՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

I

Տանը վերջապես համաձայնեցին ձմեռային արձակուրդին Լևիկին հյուր ուղարկել Երևան՝ մորաքրոջ մոտ: Ամենասկզբում չէին համաձայնում, հատկապես մայրը:

— Քե՞զ... Արձակուրդի՞ն... ոչ մի լավ բան,— ասում էր նա:— Մի քիչ նստի՝ պարապի, գրավորներիդ «երկուսները» ուղղի...

Բայց հետո համաձայնեցին. նույնիսկ ուրախությամբ.

— Կգնաս կտեսնես, թե Բաբկենը ինչ տղա է, մի քիչ օրինակ կվերցնես նրանից, համ էլ նա քեզ կըստիպի գրավորներիդ վրա աշխատել...

Լևիկը վերջին անգամ երեք տարի առաջ էր տեսել մորաքրոջ տղային: Բայց օր չէր լինում, որ նրա մասին տանը խոսք չլիներ: Եվ շատ զարմանալի ձևով էին խոսում: Կարծես այդ մորաքրոջ տղան աշխարհում գոյություն ուներ միայն Լևիկին ամաչեցնելու համար:

Մեկ էլ տեսար՝ մայրը կարդում է Երևանից ստացած նամակը, ապա հանդիմանանքով նայում Լևիկին և ասում.

— Ամաչիր, է՛, ամաչիր... Բաբկենը քառորդը փակել է «հինգերով», իսկ դու...

Կամ՝

— Բաբկենը այնքան լավ է գրել շարադրությունը, որ ուզում են թերթում տպել...

Մի ուրիշ անգամ էլ, թե՝

— Արի, արի կարդա ու իմացիր, թե ինչպե՛ս է Բաբկենը մորը օգնում, ու ամաչիր...

Լևիկը ամեն անգամ զարմանում է: Ախր, ինչո՞ւ պիտի ամաչի: Ախր, ինչո՞ւ պիտի ամաչի, է... Բա Բաբկենը ու ինքը մեկ ե՞ն... Նա չորս տարով իրենից մեծ է: Ի՞նչ գիտեն, է՛, թե ինքը ինչ տղա է դառնալու մի չորս տարի հետո: Կամ նույնիսկ գուցե երկու տարի հետո: Համբերություն չունե՞ն, ինչ է:

Բայց մայրը ամեն անգամ ասում էր.

— Լավ, լավ, քեզ գիտենք... Բաբկենը չորս տարի առաջ էլ կարգին տղա էր...

Լևիկի ձեռքը մի ճամպրուկ տվեցին, մի հատ էլ ծրար, որի մեջ նամակներ կային մորաքրոջը, մեկ էլ Բաբկենին... Ու ամբողջ ընտանիքով եկան ճանապարհեցին:

Ամենավերջին րոպեին էլ, կայարանում, նրան համբուրելուց առաջ մայրը ասաց.

— Գնա տես Բաբկենը ինչ տղա է ու ամաչիր...

Բայց մեկ է, Լևիկը ուրախ էր: Առաջին անգամ մենակ ճանապարհորդություն էր կատարելու, Երևան էր գնում, ինչո՞ւ պետք է ուրախ չլիներ... Այդպես ուրախ սրտով էլ պառկեց քնեց ու լույսը հազիվ բացված՝ արթնացավ. գնացքը մոտենում էր Երևանին...

Կայարանում նրան դիմավորեց Բաբկենը: Հազիվ իրար ճանաչեցին:

— Էստեղ՝ կայարանի կողքն է մեր տունը,— ասաց Բաբկենը,— ոտքով գնանք:

Գնացին: Լևիկը կողքից նայում էր մորաքրոջ տըղային ու իսկի էլ չէր ամաչում: Ինչո՞ւ պիտի ամաչեր: Շատ լավ տղա էր էդ Բաբկենը, բոյով, լայնաթիկունք, մի խոսքով, կարգին տղա էր, ու դեռ փողոցում Լևիկը շարունակ նայում էր նրան ու ոչ միայն չէր ամաչում, այլև դեռ շատ էլ ուրախ էր:

Մի քիչ քայլեցին, բարձրացան մի շենքի երկրորդ հարկը, Բաբկենը գրպանից բանալին հանեց, դուռը բաց արեց ու ասաց.

— Էս էլ մեր տունը... Ես ու դու մենակ ենք: Մամաս գործուղման է գնացել:

— Բա էս նամակը ի՞նչ անեմ,— հարցրեց Լևիկը:

— Ոչինչ: Տուր ինձ, մաման ինձ թույլ է տվել կարդալ իր բացակայության ժամանակ ստացած նամակները,— ասաց Բաբկենը ու ծրարը վերցրեց:

— Մինչև ես կարդամ՝ դու գնա լվացվիր,— ասաց նա:

Երբ Լևիկը լվացվեց եկավ, տեսավ, որ Բաբկենը խորամանկ ժպտալով իրեն է նայում:

— Երկու հատ «երկու» ունես, հա՞...

— Գրավորներից,— ասաց Լևիկը, ասես ուզենալով արդարանալ...

— Լսիր,— ասաց Բաբկենը,— ուրեմն՝ Լևիկ, Լևի որ ասում են՝ էդ դու ես եղե՞լ,— ու սկսեց ծիծաղել:

— Ի՞նչ ես ծիծաղում,— նեղացավ Լևիկը:

Բաբկենը ավելի բարձր սկսեց քրքջալ:

— Ախր, ինձ մայրիկս անընդհատ քեզ է բերում օրինակ, թե՝ Լևիկը էսպես, Լևիկը էնպես... Թե՝ ամա-

չիր, ամաչիր... էդ չէ՞ս... երկու հատ «երկու» ես ունեմ, երկու հատ էլ՝ դու, է՛լի...

Լևիկի բերանը բաց էր մնացել:

— Բա ինձ էլ միշտ քեզանով են ամաչեցնում...

— Ի՞նչ ես ասում...

— Ազնիվ խոսք...

Այստեղ երկուսն էլ մի լավ, կուշտ ծիծաղեցին: Կարգին ուրախացան: Շատ ուրախացան:

— Նայիր ինձ՝ ամաչիր,— ասում էր Լևիկը:

— Դո՛ւ նայիր ինձ ու ամաչիր,— ասում էր Բաբկենը:

Ու ծիծաղում էին, ծիծաղում... Շատ լավ էր:

Հետո Լևիկը ճամպրուկից հանեց գաթա, թխվածքներ, դրեց սեղանին: Բաբկենն էլ ինչ-որ ուտելիքներ հանեց դրեց սեղանին, ուրախ-ուրախ իրար հետ նախաճաշեցին ու միասին դուրս եկան զբոսնելու: Լավ ման եկան: Կրկես գնացին, կրկեսից հետո՝ կինո, փողոցներում հո այնքան ման եկան, որ մութ էր արդեն, երբ հալից ընկած վերադարձան տուն:

Տուն եկան թե չէ, Բաբկենը մեկնվեց բազմոցին.

— Լավ հոգնել եմ,— ասաց նա,— Լևիկ ջան, լըվացվիր հաց ուտենք...

Նորից միասին սեղան նստեցին, կերան, զրուցեցին, կատակեցին, նորից ծիծաղեցին, հիշելով, թե մայրերն ինչպես էին նրանց միշտ միմյանց համար օրինակ բերում, ու պառկեցին քնելու...

2

Լույսը կարգին բացվել էր, երբ Լևիկը արթնացավ:

Նայեց Բաբկենի կողմը, տեսավ, որ դեմքը դեպի պատը, նա դեռ հանգիստ քնած է: Ինքն էլ դեմքը արեց դեպի պատը, աչքերը փակեց:

Ճիշտ է, քունը չէր տանում, բայց տաք անկողնում մի քիչ ավել պառկելուց ի՞նչ վնաս: Մանավանդ, երբ վրադ խոսող չկա: Հիմա տանը լիներ՝ մայրը հինգ րոպեն մեկ պետք է գոչեր.

— Վե՛ր կաց, թամբալ...

Դեռ գուցե նույնիսկ Բաբկենին օրինակ բերեր, ամաչեցներ...

Այստեղ Լևիկը մտքում նորից ծիծաղեց ու վերմակը ավելի լավ քաշեց գլխին:

Մի կես ժամից նա նորից նայեց Բաբկենի կողմը, նույն դիրքով պառկած էր:

«Ա՛յ թե քնկոտն է, հա՛»,— զարմացավ Լևիկը ու շուռ եկավ մյուս կողքին:

Չգիտես, ինչքան ժամանակ անց, նայեց տեսավ որ Բաբկենը շարունակում է անխռով քնել:

«Սրան որ թողնես՝ մինչև իրիկուն կքնի»,— արդեն մի քիչ դժգոհ մտածեց նա: Լևիկը պառկելուց ձանձրացավ, բայց բանն այդ չէր: Նա սկսել էր սովածանալ: Վերջապես չկարողացավ համբերել:

— Բաբկե՛ն,— ձայն տվեց նա,— Բաբկեն...

Բաբկենը դժվարությամբ աչքերը բաց արեց:

— Ի՞նչ կա,— հարցրեց նա:

— Ի՞նչ պիտի լինի: Վե՛ր կաց...

— Հա՛,— անորոշ բացականչեց Բաբկենը ու նորից դեպի պատը շրջվեց:

Լևիկը էլ չկարողացավ համբերել: Վեր կացավ: Մի քիչ պարապ-սարապ ման եկավ սենյակներում: Հետո մտածեց-մտածեց՝ գնաց լվացվեց: Հետո կանգնեց մի քիչ նայեց գրապահարանին, հետո ուզեց մի քիչ բան ուտել՝ ամաչեց. ինչպե՞ս նստեր ու մենակ ուտեր, էդ կլիներ ընկերությու՞ն... Բայց մեկ էլ չկարողացավ համբերել:

— Բաբկե՛ն,— նորից բղավեց նա:

— Ի՞նչ կա...

— Վեր կա՛ց, ժամը տասներկուսը դարձավ:

— Հա՛,— նորից անորոշ բացականչեց Բաբկենը, ապա քունը գլխին ավելացրեց.— Ախր, երեկ քո խաթեր առավոտ շատ շուտ էի վեր կացել, սովոր չեմ... պիտի քունս առնեմ,— ու էլի համառորեն դեպի պատը դարձավ:

— Բա առավոտները ինչպե՞ս ես դպրոց գնում, ա՛յ տղա,— համարյա բարկացած հարցրեց Լևիկը:

— Բաբկենը չպատասխանեց: Երևի արդեն քնել էր:



Ա՛յ բեզ փորձանք... քաղցից աչքերը մթնում էին: Երեկվանից սեղանը այնպես թափթփված էլ մնացել էր: Չդիմացավ, մի փշուր գաթա գցեց բերանը, բայց ամաչեց կուշտ ուտել:

Քիչ հետո արդեն բոլորովին բարկացած ու վճռական նա ձայն տվեց.

— Բաբկե՛ն:

— Ի՞նչ կա,— նորից ասաց Բաբկենը և ուզեց աչքերը փակել, բայց Լևիկը մոտեցավ, նրա ուսը ցնցեց ու ասաց.

— Ախր, վեր կաց հաց ուտենք, է՛...

— Հա՛,— բացականչեց Բաբկենը ու վերջապես դանդաղորեն սկսեց հագնվել: Մի կես ժամ քաշեց, մինչև լվացվեց, լրիվ հագնվեց, սանրվեց, ապա եկավ հյուրասենյակ ու նորից հարմար ձգվեց բազմոցի վրա: Այստեղ արդեն քիչ էր մնում Լևիկի լացը գար:

— Ես սոված եմ,— արդեն վճռականորեն հայտարարեց նա:

— Վրաս հալ չկա... ալարս գալիս է...— քթի տակ խոսեց Բաբկենը, ապա հայտարարեց.— հոգնած եմ...

Լևիկը շվարած նայում էր նրան:

— Լսի՛ր,— վերջապես ասաց նա,— չորս տարով ինձանից մեծ ես, վրադ էդքան էլ հալ չկա...

Նույնիսկ այդ էլ չազդեց Բաբկենի վրա:

— Ի՞նչ ես ուզում ինձանից,— ասաց նա:— Ի՞նչ է, կարծում ես չորս տարուց հետո դու էսպես չե՞ս լինելու, ի՞նչ ես ինձ ամաչեցնում: Թե լավ եղբայր ես, դու սեղանը սարքի, իսկ ես մի քիչ էլ հանգստանամ... Նախ հավաքի երեկվա մնացորդները, աղբամանը պատշգամբումն է... հետո թեյ տաքացրու, նայիր ի՞նչ կա սառնարանում...

Լևիկը մեկ մտածեց ոչ մի բան էլ չանի, բայց քաղցը հաղթեց: Մի հոգոց քաշեց ու անցավ գործի:

Քիչ հետո նա հայտարարեց.

— Սեղանը պատրաստ է, վե՛ր կաց...

3

Այդպես սկսվեց Լևիկի երկրորդ օրը Երևանում:

Բայց երկրորդ օրը փառք էր:

Բա որ մյուս օրը տանը ուտելու բան չէր մնացել ու առավոտ վաղ ստիպված ինքը գնաց խանութ: Բա որ երրորդ օրը Բաբկենը հիվանդացավ և տաք ճաշ

— Դու բորշչը գտիր, միասին կթարգմանենք,— հայտարարեց Բաբկենը:

Այստեղ Լևիկը քիչ էր մնում ասեր, թե այդքան բկլիկ լինելն էլ մի բան չի: Բա ի՞նչ, որ բորշչ չուտեր, հո չէ՞ր մեռնի... Բայց բան չասաց: Բաբկենը պառկած տեղից մի քիչ օգնեց, ինչ որ կար գրված, Լևիկը թարգմանեց, հետո, ինչպես գրված էր գրքում, սկսեց ամեն ինչ պատրաստել:

Դուք դեռ մինչև վերջ լսեցեք, է՛... Բա որ հետո էլ պարզվեց, որ տանը էլ համարյա թե մաքուր բաժակ ու աման չի մնացե՛լ:

— Դու ի՞նչ տղա ես,— բարկանում էր Լևիկը:— Գոնե ամեն օր մի քիչ լվանայիր: Համ էլ մնացել-չորացել են, դժվար է...

Վերջը Լևիկը տեսավ, որ ինքը չլիներ, Բաբկենը մոր բացակայության ժամանակ կկորչեր: «Էս տեսակ թամբալին էլ մենակ թողել գնացել է»,— զարմանում էր մորաքրոջ տղան:

Մի խոսքով, ձմեռային արձակուրդը համարյա թե հարամ եղավ Լևիկի համար: Ասենք, չի կարելի ասել, թե բոլորովին հարամ եղավ: Ժամանակ գտնում էին կինո, թատրոն, զբոսանքի գնալու, միայն թե ահագին չարչարվեց Լևիկը: Շատ չարչարվեց: Ամեն երեկո էլ ստիպված նստում էր և ճաշի գրքից թարգմանում ու արտագրում էր, թե ի՞նչ և ինչպես պետք է պատրաստի հաջորդ օրը: Այնքան էլ բկլիկ տղա էր Բաբկենը: Ամեն օր սիրտը նոր ճաշ էր ուզում...

Բայց վերջին երկու օրը Լևիկի օրինակը լավ էր ազդել Բաբկենի վրա: Նա սկսել էր կարգին օգնել Լևիկին, իսկ վերջին օրը համարյա թե չէր թողնում, որ Լևիկը մի գործ անի:



էր ուզում: Կարծում եք հե՞շտ բան է: Հիվանդի համար տաք ճաշ: Ուզածն էլ ի՞նչ՝ տանու բորշչ: Հուսահատությունից Լևիկի լացը գալիս էր: Բայց գնաց շուկա, խանութ, ինչ հարկավոր էր առավ, հետո եկավ տուն ու սկսեց աղաչել.

— Գոնե ասա, ի՞նչ անեմ...

— Ճաշի գիրքը էդտեղ է, ընդունիչի տակի սեղանի դարակում...

Բա որ ճաշի գիրքը ռուսերեն է՜ր:

— Դու ճամփի վրա ես,— ասում էր նա:

Եվ արդեն ամեն ինչ էլ կարողանում էր անել:

Այնպես էլ արագաշարժ էր դարձել...

Լևիկը շատ էր զարմացել: Նույնիսկ ամենավերջին րոպեին, երբ Բաբկենը նրան ճանապարհ էր գցում կայարանում, Լևիկն ուզեց հարցնել, թե բա ինչպե՞ս եղավ, որ վերջին երկու օրում այդքան փոխվեց, բայց մի քիչ ամաչեց. չէր ուզում վերջին րոպեին մորաքրոջ տղային նեղացնել:

Բայց գնացքում ամեն ինչ հասկացավ: Դե, գնացքում մարդ ժամանակ շատ է ունենում մտածելու: Քեզ համար անշարժ պառկում ես ու մտածում: Լավ բան է գնացքը...

«Ինձանից ամաչեց և օրինակ վերցրեց»,— գլխի ընկավ Լիկը:

4

Ազնիվ խոսք, Լիկը չէր ուզում մորաքրոջ տղային բամբասել: Բայց համբերությունն էլ լավ բան է: Տուն մտավ թե չէ, մայրը անմիջապես սկսեց.

— Տեսա՞ր, ինչ տղա է... Մի կարգին չենք-չնորհք սովորեցի՞ր, մի օրինակ վերցնեիր, է՛լի...

Չէ, համբերությունը լավ բան է, բայց սահման ունի, ու այստեղ Լիկը, ինչպես ասում են, աչքերը փակեց ու բերանը բաց արեց:

— Ես,— ասաց նա,— բան չունեմ ասելու, շատ էլ լավ տղա է Բաբկենը: Բայց... Նրան օրինակ չբերեք: Թմբալի մեկը ոչինչ չի կարողանում անել: Էդ մորաքույրն էլ խեղճին մենակ թողել գնացել էր... Ես,— բարկացած շարունակում էր Լիկը,— ես որ չգնայի, ի՞նչ պիտի աներ խեղճը: Սոված պիտի մեռներ... Ես...

Մայրը զարմացած նայում էր տղային:

— Նոր փորձանք,—վերջապես տխրությամբ ասաց նա:— Գնացել ես Երևան, սուտ խոսել ես սովորել... այդ մեկը չկար՝ այդ էլ... Դու գործ ունե՞ս...

Լիկը այստեղ կպայթեր, ազնիվ խոսք, կպայթեր: Բայց չպայթեց:

— Դե տեսե՛ք,— բղավեց նա,— տեսեք, ես գործ կարո՞ղ եմ անել, թե՞ չէ...

Ու սկսեց: Այդ օրը տանն ահագին գործ արեց Լիկը:

Բայց մայրը էլ չէր զարմանում, և տանեցիներից ոչ ոք էլ չէր զարմանում: Նրանք Լիկից թաքուն կարդացել էին Բաբկենից ստացած նամակը և ժպտալով հետևում էին նրան, իսկ երբ Լիկը երևանյան սովորությամբ սկսեց ուսումնասիրել ճաշի գիրքն ու թարգմանություն անել, մայրն ասաց.

— Լա՛վ, դու ճաշի հետ գործ չունես: Ես հիմա հավատում եմ, որ սուտ չես խոսում...

— Չէ,— համառեց Լիկը,— տես, թե ինչպես էի, էլի, Երևանում ճաշ եփում ձեր էդ օրինակելի թմբալի համար:

Մայրը ժպտալով շարունակում էր նայել նրան, իսկ քույրը թեքվելով գրասեղանի առաջ թարգմանություն կատարող եղբոր կողմը, հայտարարեց.

— Լիկի ձեռագիրը մի քիչ լավացել է...

Լիկն արհամարհանքով նայեց քրոջն ու ասաց.

— Գուցե մտածես, թե Բաբկենի՞ց եմ օրինակ վերցրել:

Բայց չէ, ի՞նչ կարող ես անել: Հե՞շտ է արդարության հասնելը: Մի որոշ ժամանակ անց, մայրը նորից ամեն ինչ մոռացած, տեղի-անտեղի ասում էր.

— Գոնե օրինակ վերցրու մորաքրոջդ տղայից...



# Չորս ոսկեգույն կոճակ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

Նկ. ՎԱԶԻ ԹԵՎԱՆՅԱՆԻ

*Մհերը նետվեց պահակատան անկյունը, որտեղ վիթխարի թմբկագլանն էր: Երկու ձեռքով կառչելով թմբկագլանի թևից, փորձեց պտտել: Շունչը կտրվեց լարումից, բայց թմբկագլանը հազիվ կես պտույտ կատարեց միայն:*

*Մի՞թե ամեն ինչ իզուր է անցնելու: Պետք է նորից փորձել, ամբողջ ուժով: Թմբկագլանն ասես տհաճությամբ պտտվեց, ծանր շղթան ձգելով իր հետևից... Մի ամբողջ պտույտ... Դարբասի փեղկերն արդեն բավական հետ են գնացել: Մի քիչ էլ, ու նրանց միջով մարդ կանցնի: Թմբկագլանը ճռնչալով ու կրճտալով պտտվեց տեղում... Մհերի աչքերը մթնել էին, դեմքը ողողվել էր քրտնքի մեջ: Դրսում կատաղի հրաձգություն էր: Գնդակները սուլոցով ու ժժոցով զարկվում էին պատերին, դարբասի երկաթյա փեղկերին... Բայց Մհերն այդ ամենը կարծես քնի մեջ էր լսում... Նրա միտքն աշխատում էր միայն մի ուղղությամբ՝ թմբկագլանը պտտել...*

*Մեկը շնչասպառ ներս ընկավ պահակատուն...*

*«Վերջ», — մտածեց տղան աչքերը փակելով:*

*— Կեցցե՛ս, Մհեր, — լսեց նա մի ծանոթ ձայն ու աչքերը բացեց: Քեռին էր, դարբնի որդին: — Տուր*

---

*Սկիզբը՝ 1966 թ. №№ 9—12, 1967 թ. №№ 1—4*

քնձ թմբկազյանի թեր։— Եվ սկսեց թմբուկն արագ թափով պտտեցնել։ Երկաթե փեղկերը ճռնչալով ետ գնացին, և զորքը հաղթական աղաղակով ներխուժեց պալատ։

Կարճ ժամանակ կատաղի մարտեր ծավալվեցին պալատի ներսում։ Բայց համոզվելով, որ դիմադրությունն իզուր է, շուտով գլխավոր աշտարակի գլխին սպիտակ դրոշ բարձրացրին։ Պալատը անձնատուր եղավ։

Բայց ո՞ւր էր Թոբիլ Առաջինը։ Թագավորը չկար։ Դարբին Գոտֆրիդն ասաց.

— Ես գիտեմ, թե որտեղ է Թոբիլ թագավորը. եկեք իմ հետևից։

Դարբին Գոտֆրիդը հանեց գրպանից բանալին, բացեց առաջին երկաթե դուռը, հետո՝ երկրորդը, երրորդը... մինչև քառասուներորդը։ Քառասուներորդ սենյակում մարդիկ տեսան Թոբիլ թագավորին, որ կուչ էր եկել սենյակի մի քնջում։

— Դո՛ւրս արի,— ասին։

— Դուրս չե՛մ գա,— ասաց։

— Դո՛ւրս արի,— ասին,— վերջը եկել է։

— Դուրս չե՛մ գա,— ասաց,— ինչ ուզում եք արեք։

Տեսան այդպես է, վերցրին հրացանի խզակոթի տակ ու դուրս հանեցին պալատի դարբասից... Դարբին Գոտֆրիդն էր ու իր որդիները, Թովմասն էր, մի քանի զինվոր ու մեր տղաները։ Տանում են, ու մեկ էլ թագավորի ներսում ինչ-որ բան՝ ծը՛լնգ, ոնց որ կոտրվող զսպանակ։ Ի՞նչ բան է՝ ոչ որ գլուխ չի հանում։ Մի տասը-քսան քայլ գնում են՝ էլի — ծը՛լնգ, ոնց որ ժամացույցի լարը կտրվի... Այդպես, մինչև քաղաքի հրապարակ հինգ-վեց անգամ Թոբիլ Առաջինի ներսից տարօրինակ ծլնգոցներ էին լսվում, բայց ոչ մեկը գլխի չընկավ, թե ինչ բան է։

Բերին հասցրին հրապարակ։ Ժողովուրդը լցվել, ծով էր կապել։ Դե, ո՞վ չի ուզում տեսնել Թոբիլ Առաջինին։ Բոլորն էլ ուզում են։ Ու դրա համար էլ բան ու գործ թողած, եկել էին տեսնեն թագավորին։ Անենք, շատերը հո բոլորովին չէի՞ն տեսել նրա երեսը ու հիմի ուզում էին գոնե վերջին անգամ թեկուզ հեռվից-հեռու մտիկ անել նրա պատկերքին։ Գտնվեցին նույնիսկ սրախոսներ.

— Թոբիլ թագավոր հա Թոբիլ թագավոր... Եղած-չեղածն է՞ս է... Մենք էլ գիտեինք կարգին մարդ է՝ բոյով-բուսաթով, շենք-շնորհքով...

— Էսքան տարի նստել էր մեր շլնքին...

— Հա՛, է՛լի... Ուսներս մի կարգին թափ տայինք, վայ թե ընկներ, մեծ կտորը ականջը մնար։

Թովմասը ձեռքը բարձրացրեց, որ ժողովուրդը հանդարտվի, ու ասաց.

— Ժողովու՛րդ, Թոբիլ թագավորը, որ մեր արյունը ծծում էր, հիմա մեր ձեռքին է։ Որոշենք, թե ինչ պատիժ տանք։

Բոլորը սուս կացան։ Ախր որտե՞ղ է լսված, որ արդարն ու մեղավորը ջոկելու կամ պատիժ տա-



լու համար ժողովրդի կարծիքը հարցնեն։

— Մենք ի՞նչ դատավոր ենք, որ որոշենք պատիժ տալ, յա՝ չտալ,— առաջ եկավ մի ծերուկ, որ ձեռքը վարտիքին հազիվ էր ոտի վրա մնում։

— Ամենամեծ դատավորը դուք եք՝ ժողովուրդը։ Ի՞նչ պատիժ տանք Թոբիլ Առաջինին։

— Ինչ պատի՞ժ... Ինչ պատիժ որ ինքը մեզ էր տվել. կտրել շալվարի կոճակները, ու թող մինչև կյանքի վերջն էդպես անկոճակ ապրի։

Լսվեցին ուրախ ծիծաղի ձայներ։ Թոբիլ թագավորը անկոճա՜կ...

— Համաձա՞յն եք, ժողովուրդ։

— Համաձա՜յն ենք...

— Համաձա՜յն ենք...

— Թող ինքն էլ փորձի...

Մհերը հենց դրան էր սպասում. մոտ վազեց Թոբիլ թագավորին ու չը՛խկ—կոճակները՝ կը՛տ-կը՛տ-կը՛տ-կը՛տ, թափվեցին տախտակամածին, և նա արագ-արագ հավաքեց՝ մե՛կ, երկո՛ւ, երե՛ք, չո՛րս...

— Կարելի՞ է այս կոճակները պահեմ ինձ,— հարցրեց նա։

— Կարելի է,— ժպտաց Թովմասը։

Այդ րոպեին մի չտեսնված, չլսված տեսարան բացվեց ժողովրդի աչքի առաջ. Թոբիլ Առաջինի շալվարը սահեց ներքև, ու բոլորը տեսան... Ի՞նչ տեսան՝ թագավորի ոտքերը... երկաթից էին... Այո՛, այո՛, իսկական երկաթից։ Զարմանքի բացականչություն անցավ հրապարակով։ Մարդիկ չէին հավատում իրենց աչքերին, բայց չհավատալու բան չկար. Թոբիլ Առաջինը իր բարակ երկաթե ոտներով կանգնել էր տախտակամածին՝ մի քիչ վախեցած, մի քիչ շփոթված, մի քիչ ամոթահար։ Նա կռացավ, որպեսզի շալվարը վեր բարձրացնի, բայց դա, ըստ երևույթին, նրա վերջին շարժումն էր։



Ինչ-որ բան ուժգին ծլնգաց նրա ներսում, բոլորը լսեցին այդ. և հանկարծ Թոբիլ Առաջինը տեղնուտեղը փլվեց տախտակամածին մետաղային զրնգոցով... Այն, ինչ որ քիչ առաջ կոչվում էր Թոբիլ թագավոր, այժմ մետաղի ջարդոնի մի անձև կույտ էր, որից անջատվեցին ինչ-որ անիվներ ու անվակներ և գլորվեցին տախտակների վրայով այս ու այն կողմ... Առաջին զարմանքն անցնելուց հետո Թոմասը դարձավ մոտիկ կանգնածներին.

— Տարե՛ք այդ աղբը։

Արտակը շշնջաց ընկերներին.

— Ափսո՜ս, այդքան մետաղի ջարդոնը իզուր տեղը պիտի կորչի...

Տղաները ծիծաղները զսպեցին։

Ժողովու՜րդ,— նորից դիմեց Թոմասը բազմությանը,— Թոբիլ թագավորը չկա-այլևս, և մենք ազատ ենք։ Եկեք այսօր հիշենք այն քաջերին, որոնք օգնեցին մեզ հաղթանակ տանելու։ Առաջին հերթին մեր զարքին Գոտֆրիդին ու իր որդիներին, ծեր հովիվ Ֆրանկին, ապա իրենց հեռավոր երկրից մեզ օգնության եկած այս չորս պատանիներին...

Թոմասը շուռ եկավ, բայց... մեր հերոսներն արդեն անհետացել էին...

Թողնենք Թոբիլստանի ժողովուրդն ուրախանա, դառնանք մեր հերոսներին։ Նրանք արդեն ճամփա էին ընկել դեպի տուն։

Քայլում էին ծանոթ ճամփով ու թնդացնում իրենց ուրախ երգը.

Կար չկար մի արջամուկ։
Լավ գիտեր իր բանը.
Վեց օր՝ շաբաթն արձակուրդ,
Կիրակի էլ տանն էր...

Այդպես եկան հասան հովվին, որը կախարդական մահակը տվել էր նրանց։ Ծեր հովիվը կանգնել էր ճամփեզրին և ասես հենց նրանց գալուն էր սպասում։

— Բարև՛, պապի։

— Բարին արևներդ...

Ծերուկն առաջվա պես կանգնել էր առվի այն կողմը, թմբի վրա և, մի ձեռքը փարտիքին, խորամանկ ժպիտով նայում էր նրանց։

— Պապի, էլի՞ փարտիքդ կոճակ չունի,— զարմանքով հարցրեց Արտակը։

— Հա, բալես...

— Ես կոճակ ունեմ,— ասաց Մհերը,— ուզու՞մ ես, պապի։— Եվ նա պստիկ ափը մեկնեց ծերունուն։ Ափի մեջ պսպղում էին չորս ոսկեգույն կոճակներ՝ Թոբիլ թագավորի կիսադեմը վրան։

Ծերունին ուշադիր նայեց կոճակներին, ապա գլուխն օրորեց։

— Չէ, պահիր քեզ։ Ես արդեն սովորել եմ էսպես։ Է՜, քանի տարի եղավ... Թող ուրիշները կարեն, ու էնպես ամուր կարեն, որ ոչ մի թագավոր չկարողանա պոկել։ Եվ ծերունին նորից խորամանկորեն ժպտաց։— Իսկ այ, մահակը կվերցնեմ։ Էլ պետք չի ձեզ, հը՞...

Մհերը մահակը մեկնեց նրան։

— Շնորհակալություն, պապի,— ասաց Աշոտը։

— Դե, բարի ճանապարհ...

— Մնաս բարով, պապի։

Տղաները շարունակ ետ էին նայում. ծերունին դեռ անշարժ կանգնած էր նույն տեղում, թմբի վրա, ձեռքը՝ փարտիքին։ Երբ վերջին անգամ շուռ եկան, հովիվը հազիվ նշմարվում էր, և տղաները տեսան, թե նա ինչպես մահակը բարձրացրեց ու ճոճեց օդում ի նշան հրաժեշտի։

Թոբիլստանի ձորերում նորից թնդաց արջամկան երգը.

Հա՜-հա՜... Այ քեզ արջամու՜կ...
Տեսան ինչն ինչոց է,
Հա՜-հա՜, տվին արձակուրդ,
Ճամփեցին հոր ծոցը...

Նույն օրվա երեկոյան «Լուսին—1» տիեզերանավը հանգիստ վայրէջք կատարեց ծանոթ բակում։ Այդ ժամին լարված պայքար էր գնում «Ար-



բանյակ» և «Հրթիռ» ֆուտբոլային թիմերի միջև, այնպես որ մեր հերոսների ժամանումը միանգամայն աննկատելի անցավ, հուրախություն Գիտնականի, նա չէր սիրում աղմուկ ու իրարանցում, որոնք անխուսափելի են նման պարագաներում։

Հինգ րոպե հետո «հաղորդավարը» հայտարարեց, որ «Հրթիռ» թիմի ինը համար Զաքարյանը դուրս եկավ խաղից և նրա փոխարեն 13 համարի տակ դաշտ մտավ Աշոտ Թումանյանը։ Բակը թնդաց ուրախ աղաղակներից։

— Հո՛պ տուր, Աշոտ։

— Հիմի մենք դրանց ցույց կտանք...

Մի տղա մոտեցավ Արտակին ու Տիգրանին և իբրև նորություն հայտնեց.

— Սեդայի հայրիկը եկել է։

Այդ րոպեին Մհերը բռնել էր Էդիկին ու Թամարին և գրպաններն էր քրքրում.

— Իսկ ես կոճակներ ունեմ, բա՛... Թոբիլ թագավորի նկարով, բա՛...

Քոթոթը պտտվում էր նրանց շուրջը և ուրախ հաչոցով հաստատում տիրոջ խոսքերը։

## ՀԱՂԹԱՆԱԿԻ ԱՌԱՎՈՏ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

Լեռները բույր են մաղում անձայն
Ջրերի վրա անձրևաթաց,
Ելնում ես փայլով ալեծածան,
Մեր հաղթանակի պարզ լուսաբաց։
Խաղում է լույսիդ ժպիտն ամեն,
Դաշտերն են ծփում լցված կյանքով,
Հավքերի ձայնով երգում ես մեղմ
Եվ զրնգում ես երկնի զանգով։
Օ՜, հաղթանակի զով լուսաբաց,
Աշխարհը քեզնով փրկվեց մահից,
Տվիր զինվորին դու վերադարձ,
Եվ պատերազմը ընկավ գահից։
Ցրեցիր լույսով մշուշ ու ամպ
Եվ ծունկի բերիր մեր թշնամուն։
Բացեցիր երկրիս հզորությամբ
Այս ջինջ օրերի ճամփան անհուն։
Մայրության անուշ բույրով ես լի,
Երգ են ցոլքերը քո կապուտակ,
Քո ճանապարհով պիտի քայլի
Խաղաղությունը երկնքի տակ։

Նկ. ԷԴՎԱՐԴ ԱՐԱՋՅԱՆԻ



# ԱՎԱԳ ԲԱՐՍԵՂՅԱՆԻ 17-ՐԴ ԱՐԿԱԾԸ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՀՈՎԱՆԻ

## ՇԱՏ ԱՆՀՐԱԺԵՇՏ ՄԻ ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ

Ովքեր կարդացել են իմ «Պաշարված տանձենին», նրանք պիտի շատ լավ ճանաչեն Ավագ Բարսեղյանին: Ես այդ պատմվածքում ասել եմ, որ եթե այդ տղան նստի ու իր արած հիմարությունները մեկ-մեկ գրի, գուցե իմ ամենամեծ գրքից էլ մեծ բան ստացվի: Այնուհետև ես նրան նույնիսկ սպառնացել էի, որ եթե նա ձեռք չքաշի այդ հիմարություններից՝ ինքս եմ գրելու: Իմ ասածի մեջ ոչ մի չափազանցություն չկար. ուղիղ 16 դեպք գիտեի այդ անիրավի մասին, որոնք չմոռանալու համար մեկ-մեկ աղագրել էի ծոցատետրիս մեջ և, ցանկացողին, ուզած ժամանակ կարող էի ցույց տալ, բայց... կինս վերցրել և, առանց մաշված ժակետիս գրպանները նայելու, փոխել է ընդամենը 23 ընկույզի հետ: Ուրեմն ամեն մի պատմվածքին մեկուկես ընկույզ էլ չի հասնում, էլ չեմ ուզում ասել, որ ընկույզների կեսից ավելին էլ փուչ դուրս եկան...

Տխուր պատմություն է... Ինչևիցե, հենց այստեղից էլ սկսվում է 17-րդ պատմվածքը: Դե, մեկն արդեն պատմել եմ, իսկ 15-ը... ընկույզի պես կերանք...

Ամբողջ պատմությունն այն է, որ այդ ծույլ-շատակերը (և խառնակիչը) թվաբանությունից ստացած «երկուսները» դասամատյանից ջնջելու և «երեքներ» շինելու համար (կարծես թե թվաբանության ուսուցչուհի Սահակյան Ազգանուշը կարճատես լինելով իր պես 2-ը 3-ից չի տարբերում) դեկտեմբերի 21-ին որոշում է դասերից հետո մնալ դպրոցում...

Եվ ահա ես, շատ կարևոր գործերս թողած, այժմ ստիպված եմ ձեզ պատմել՝

## ԹԵ ԻՆՉՈՒ ԱՎԱԳ ԲԱՐՍԵՂՅԱՆԸ ՄՏԱՎ ՊԱՀԱՐԱՆԸ

Հակառակի պես օրվա հերթապահը Վարսենիկ Բաբայանն էր, կասկածամիտ այդ բամբասանը, որի հետ բազմիցս ընդհարումներ էր ունեցել: Դա նշանակում էր, որ ոչ մի միտք չունի նստարանի տակ թաքնվելը: Նստարանների տակերը ստուգելու՝ տեսնելու համար, հո ոչ-ոք բան չի՞ մոռացել՝ Բաբայանը բոլորից հետո պիտի դուրս գար դասարանից:

Ավագը փորփրում էր ուղեղը, երբ հանկարծ թեթևացած շունչ քաշեց. պահարա՜նը, իհարկե պահարանը...

Ու նա գյուտարարի երջանկությամբ, աչքի տակով սկսեց նայել իրենից մի երկու քայլ հեռու գտնվող պատի պահարանի կիսաբաց դռանը, որ, թուլացած լինելով, թեթևակի բացուխուփ էր լինում՝ ասես նրան հրավիրելով: Լավ էր՝ մուտքը դժվար չէր, բավական էր, որ Բաբայանը սկսեր նստարանների տակերը ստուգել, նա կարող էր պայուսակը գրկած, թեկուզ և չորեքթաթ տալով ներս ընկնել պահարանը: Միայն այդ ծնկների դողը... Զարմանալի բան, դեռ ոչինչ չարած, շունչը կտրվում էր և ծնկները դողում էին... Եվ ոչ միայն ծնկների դողը. ինչքան մոտենում էր դասի վերջը՝ ինչ-որ տխուր կգացմունք պղտորում էր նրա մտքերը և սիրտը կուչ բերում: Գուցե լավ կլիներ ձեռ քաշել այդ բոլորից... Չէ՞ որ դա գողության նման մի բան էր... Իսկ «երկուսնե՞րը»...

Բայց ամեն ինչ բարեհաջող անցավ, բացի մի բանից: Նա մոռացել էր, որ պահարանը եռահարկ էր, այսինքն՝ տախտակներով բաժանված, ու, երբ կուչեկուչ և երբեմն չորեքթաթ տալով ներս էր խուժում, մի պահ շվարած չգիտեր ինչ անել ու... ստիպված ընկավ պահարանի «նկուղային բաժինը», որի առաստաղի բարձրությունը ընդամենը 48 սանտիմետր էր, իսկ լայնքը...

Դե ինքներդ պատկերացրեք կամ թե փորձեք մտնել այդպիսի մի պահարանի մեջ, այն էլ «նկուղային բաժինը», բայց, իհարկե, չմոռանալով, որ Ավագի պես տասներեք տարեկան եք, այլ՝ որ այդ շատակերի պես էլ 64,5 կիլոգրամ քաշ ունեք և որ ստիպված պիտի բերանքսիվայր պառկեք, այն էլ անշարժ, որովհետև Վարսենիկ Բաբայանը դեռ դասարանում է, ու նոր կիմանաք ու կզգաք՝

## ԹԵ ԻՆՉԵՐ ՔԱՇԵՑ ԱՎԱԳԸ ՑԵՐԵԿՎԱ ԺԱՄԸ 5 ԱՆՑ 8 ՐՈՊԵԻՑ ՄԻՆՉԵՎ ԳԻՇԵՐՎԱ ԺԱՄԸ 11 ԱՆՑ 13 ՐՈՊԵՆ

Հենց առաջին իսկ վայրկյանից Ավագն զգաց, որ դրությունը չափազանց բարդ է: Նա ընկած էր արմունկների ու ծնկների վրա և պահարանի թուլացած դուռը փակ պահելու համար ստիպված էր մատների ծայրերով միշտ իր կողմը ձգել դռան ներքևի սուր ան-

կյունը: Ճիշտն ասած, եթե այդ բոլորը գրավի վրա լիներ, նա գուցե մի տաս րոպե հանգիստ դիմանար. բայց լարվածությունից շնչելը հետզհետե դառնում էր անկարելի, և հատակի քայքայված ծեփը ոչ միայն ծակծկում էր նրա մերկ ծնկները, այլև այնպիսի մի բորբոսահոտ տարածում, որից նա հազիվ էր զսպում փռշտոցը: Իսկ Վարսիկ դու, Վարսիկ, ոչ միայն հանգիստ-հանգիստ շրխկացնելով բաց ու խուփ էր անում գրասեղանների ծալովի երեսները, այլև երգում էր Ռոզի Արմենի «Ես մի սիրուն տղա տեսա» երգը, հաշվի չառնելով, որ Ավագը ոչ թե այդ տղայի պես «ջուր էր առնում աղբյուրից», այլ՝ ինքն էր քրտնելուց ջուր դարձել: Անտանելի բան էր. հոգնածությունից ու ջղայնությունից գունդուկծիկ դարձած Ավագը քիչ էր մնում բղավեր. «Դե թո՛ղ արա գնա, էլի...» բայց ինչպե՞ս ձեն հաներ: Նա զգում էր, որ այդպես երկար չի կարող դիմանալ մեջքը կոտրատվում էր ցավից, թևերը դողդողում էին ու չէր կարող ուղղվել, երբ սարսափով զգաց, որ ոչ միայն Բաբայանն է մոտեցել պահարանին, այլև տնից վերցրած բանալիների տրցակը քիչ էր մնում վայր ընկնի իր աջ գրպանից: Այժմ նա ստիպված էր աջ արմունկը կտրել գետնից, որպեսզի մի կերպ փակի գրպանի բերանը: Բայց հենց այդ էլ նրան զրկեց աջ արմունկով գետնին հենվելուց ու նրա քրտնառողող երեսը քթի ծայրով վերջնականապես իջավ հատակին, ու նա, իրենից անկախ, սկսեց համտես անել ծեփի տտիպ փշուրները: Եվ երանի թե միայն այդ լիներ սրտխառնուքի պատճառը: Հանկարծ նա զգաց, որ ինչ-որ բան արագ ու հատու վազքով անցավ քթի ծայրից մինչև ականջի բլթակը, հետո վզի վրայով մի քանի անգամ ետ ու առաջ սլանալով եկավ ու կանգ առավ նախկին տեղում... Պապո՛ւկ էր. գորշ ու զզվելի այդ հավարոտանանին տեղ ու ժամանակ էր գտել արշավի դուրս գալու... Մի՞թե կարող էր սատկեցնել կամ դեն քշել. ամենափոքրիկ մի շարժում պիտի մատներ նրա տեղը: Ու հենց այդ պահին էր, որ նա ասես ուղղակի քթի տակ, լսեց Վարսիկի շրջազգեստի շրշյունը... Կռահե՞լ էր, որ մարդ կա պահարանում... Ոչ կենդանի, ոչ մեռած Ավագը հենց այն է երևի պիտի ուշքը կորցներ, երբ հանկարծ զգաց, որ իր մատների դողդոջ ծայրերով հազիվ պահող դուռը ներս հրվեց, որին հետևեց մի թեթև չխկոց: Սկզբում նա չէր հասկանում, թե ինչ է նշանակում այդ չխկոցը, բայց հետո, երբ հազիվ էր թեթևացած շունչ քաշել, լսելով Վարսիկի հեռացող ոտնաձայնը՝ նա սոսկումով զգաց. որ գտնվում է իսկական մի դագաղում:

Սարսափը տիրեց Ավագին. միակ ելքը դուռն էր, իսկ այն էլ փակ էր հիմա: Ուրիշ ճար չկար, նա ամբողջ ուժով մեջքը դեմ տվեց «դագաղի կափարիչին» և հազիվ էր մի կերպ ծնկները գետնից կտրել, երբ ճռռալով տեղահան եղավ պահարանի միջնատախտակը, հետո ամեն ինչ խառնվեց իրար, ինչ-որ մի բան ռումբի պես պայթելով զարկվեց պատին, որին հետևեց ծակծըկող, կարկտախառն մի անձրև, և, ի վերջո, ասես երկինքը փուլ գար, իսկ դա, իհարկե, երկինքը չէր, այլ երրորդ հարկի տախտակը, որ ամբողջ ուժով իջավ նրա գլխին...

Աստված ապատի, էլի Ավագի գլուխն էր, որ դիմացավ: Ավելորդ է ասել, թե այնուհետև նա ինչեր քաշեց այդ անդրշիրիմյան խավարում խաչաձևված տախտակների և 3 լիտրանոց թանաքի շշի փշուրների միջից բանալիների տրցակը գտնելու համար: Ու երբ նա մի կերպ կարողացավ անգլիական կողպեքի բանալիով վեր նետել դուռը դրսից փակող անիծյալ կեռիկը՝ անցել էր 6 ժամ 5 րոպե, և ձմեռային լուսնյակը բերանը ծռած ներս էր նայում դասարանի լուսամուտից տեսնելու համար՝

## ԹԵ ԻՆՉ ԱՐԵՑ ԱՎԱԳԸ ԹԱՆԱՔԻ ԴՈՒՇՆ ԸՆԴՈՒՆԵԼՈՒՑ ՀԵՏՈ

Դասարանի ահավոր լռությունից և արտասովոր տեսքից սահմռկած, քարացած Ավագը լայն աչքերով նայում էր իր շուրջը: Անճանաչելի էր արևի պայծառ ճառագայթներով և միշտ ուրախ աղմուկով լցված դասարանը: Անճանաչելի և սարսափելի էր դարձել և նա ինքը: Պահարանային տենդագին մարտից հետո, կտըրված կոճակներով, փոշոտ, գզգզված և, առավել՝ մանու-



շակագույն թանաքով ողողված դեմքով նա նման էր «1001 գիշերների» խափշիկ թզուկներին:

Իսկ լույս աշխարհին էլ այնքան հաճելի չէր. այն ասես օժանդակում էր, որ հետզհետե չորացող թանաքից առանց այն էլ կծկվող ու ծամածռվող նրա դեմքը դառնա ավելի խղճալի և լացակումած: Դամբարանային լըռության մեջ, լուսնի պաղ շողերը, որ ասես անձրևում

էին սև լաքով ծածկված նստարանների վրա՝ իրենց կայծկլտուքներով ոչ միայն փշաքաղում, այլև հիշեցնում էին նրան գրքերում կարդացած ահավոր սպանություններ, Շերլոկ Հոլմսի, շշուկներով լեցուն ավերակների և սառնաշունչ վանքերի մասին: Ահից դողալով նա ձգնում էր մոռանալ ոչ միայն այդ ուրվականանման Շերլոկին, այլև պատկերացնում էր տունը, տընեցիներին, որոնք երևի փնտրում էին իրեն... Դե, իհարկե, տանը այժմ անընդհատ կնգում է հեռախոսը. բոլոր հարևանները հավաքվել են արդեն մի քանի անգամ ուշաթափված մոր գլխին. քույրը՝ վալերիանի սրվակը գտնելու համար լացակումած տակնուվրա է անում դեղերի տուփը, իսկ խեղճ հայրիկը աշխատանքից հազիվ տուն հասած, չընթրած, մի միլիցիատնից մյուսն է վազ տալիս... Ո՞ւմ մտքով կանցնի, որ ինքը այստեղ է, դասարանում...

Ավագի սիրտը կուչ եկավ. ո՛չ և երբեք ոչ. ո՛չ մի ուսուցչանոց, ո՛չ մի դասամատյան... Պիտի տո՛ւն հասնել, միայն տուն...

Ու նա այնպես էր փոշմանել իր կպվելի արարքից, որ ձեռքը գրպանը տարավ դեն շպրտելու համար նախօրոք տնից վերցրած բանալիների տրցակը, որով պիտի փորձեր բաց անել ուսուցչանոցի դուռը: Բայց ի՞նչ մեղք ունեին բանալիները. տո՛ւն, վայրկյան առաջ տուն...

Ու նա այդ որոշումից սրտապնդված ուղղվեց դեպի դուռը. բայց իսկույն ևեթ կանգ առավ: Ինչպե՞ս պիտի դուրս գար շենքից. չէ՞ որ դռնապան Մանասը այժմ նստած կլինի շքամուտքին կպած իր ապակեպատ նեղլիկ խցիկում: Գուցե լուսամուտի՞ց. իսկ ինչպե՞ս թռչի երեք հարկ բարձրությունից: Ճար չկար. ելքը միայն շքամուտքն էր... Վա՜յ աստված, երանի քեռի Մանասը այնտեղ չլինի և, եթե լինի՝ երանի քնած լինի...

Քիչ հետո, կիսախավարում սառը բազրիքները շոշափելով, աստիճան առ աստիճան նա հազիվ էր իջել հսկայական ծաղկամաններով զարդարված առաջին հարկի ընդարձակ միջանցքն ու, շունչը պահած, կուզեկուզ ուղղվել դեպի շքամուտքը, երբ... Ավա՜ղ, շքամուտքին մի երկու քայլ մնացած, փայտյա տակառից դուրս ցցված փշոտ ձեռքերի նման նրա ճամփան փակող հսկայական կակտուսի ետևից լուսնի պաղ շողերի մեջ նա նկատեց դանդաղորեն վեր բարձրացող ինչ-որ ծանոթ մի ծուխ: Այդ Մանաս քեռին էր. թեև չէր երևում, բայց փոքրիկ ձեռնափայտի երկարությամբ մուշտակի ծայրին ցցված ծխախոտի դարչնագույն ծուխը մատնում էր նրա տեղը: Արթուն էր Մանաս քեռին...

Վհատությունը պատեց Ավագին և, առաջին անգամ, փոխանակ ծիծաղելու՝ նա կսկանքով հիշեց իրեն բանաստեղծ համարող Կարապետյան Ռուբիկի այն ոտանավորը, որով Մանաս քեռուն վշտացնում էին դասերից փախչել ցանկացող ծույլերը.

Մանա՜ս, Մանա՜ս,
Լավ իմանաս,
Էնպես դուրս գամ,
Որ կարմանա՜ս...

Բայց Մանաս քեռուն կարմացնելը հեշտ չէր. ինքնագոհ ծերուկը այնպես հազաց ու ոտքի ելավ, որ Ավագի ծնկները թուլացան, ու նա վախից պլշած աչքերով, ծաղկամանների ետևում թաքնվելով, սկսեց ետ-ետ նահանջել: Իսկ երբ միջանցքի կենտրոնում, երկար մուշտուկը բերանին երևաց քունը փախցնելու համար մարմնամարզական շարժումներ կատարող Մանաս քեռին՝ նա արդեն սարսափից չոքել էր մի մեծ դռան տակ ու չգիտեր ինչ անել, երբ (այստեղ նրա բախտը բերեց. մի՞թե) դուռը ճռռալով ետ-ետ գնաց, ու նա հետույքի վրա ընկավ «կարմանահրաշ այն աշխարհը», ինչպես սիրում էր ասել Ավագի հոգեհան, քիմիայի դասատու Քոքմյանը, որտեղ մեջընդմեջ գտնվում էին՝

Հազիվ էր Ավագը ոտքի ելնելով դուռը կամացուկ փակել իր ետևից, երբ, շուռ գալով, հանկարծ դեմառդեմ եկավ լուսնաշողից պսպղացող ապակու ետևից իրեն նայող մի սոսկալի կմախքի ու ոչ կենդանի ոչ մեռած կպավ պատին... Խոլ խավարում, լուսնի շողերից չորս բոլորքում պսպղացող պահարանների ապակիների գլխապտույտ բերող պարի մեջ լսվում էին ինչ-որ շշուկներ, թևաբախյուններ. ասես ինչ-որ մեկը կըրծոտում էր, մյուսը՝ սողում, երրորդը՝ թռչկոտում, երբ



նրան թվաց, որ կմախքի ոսկորները չխկչխկացին ու նա ուր որ է պիտի ընկնի իր վրա... Սարսափից համբացած Ավագը պատից պոկվելով՝ ցատկեց առաջ. սակայն հենց այդ պահին էլ ինչ-որ մեկը ասես ճանկեց նրա բաճկոնի փեշը, հետո լսվեց վայր ընկնող ինչ-որ

բանի խուլ աղմուկը և համարյա կատվի մեծությամբ ըսպիտակ մի բան քսվելով անցավ փակագծերի պես բացված նրա դողահար սրունքների արանքից... Ավագն էր, որ չուշաթափվեց. բայց եթե չճչաց, դա արդեն ոչ թե քաջությունից էր, այլ՝ սոսկալի վախից, որից բռնվել էր նրա լեզուն: Հետո, մինչ նա խելքը գլխին հավաքելով պիտի իմանար, որ իր վրա «թռչել ցանկացողը» ոչ թե Մանասա քեռին էր, այլ դռան կից ապակեփեղկ պահարանի մեջ կանգնած կմախքը, հետո, հանձին մեկը մյուսին հաջորդող կաբինետների մի ծայրից մյուսը վազվզող ճերմակ կենդանու, պիտի ճանաչեր իր մատների ծայրերից շատ անգամ հացի փշուրներ թոցըրած ծանոթ առնետ Սուրիկին[1], որ դուրս էր թռել իր բաճկոնի փեշից կառչած վանդակամուտքի կեռիկի բացվելուց,— մինչև այդ բոլորն իմանալը՝ նա սարսափահար նետվեց դեպի ֆիզիկայի և քիմիայի լաբորատորիաները տանող բաց դուռը և շունչ քաշելու համար գրեթե կախ ընկավ դռան բռնակից: Այստեղ միայն նա հասկացավ, որ այդ բոլոր սարսափելի շշուկները, թևաբախյուններն ու չկչկոցները գալիս էին մեծ ու փոքր վանդակների ու անոթների մեջ բանտարկված թռչուններից, օձերից, ճագարներից ու կեռուններից: Ինչ իմանար Ավագը, թե կմախքից ու առնետից հետո ինչեր էին սպասում իրեն ֆիզիկայի և քիմիայի լաբորատորիաներում, որտեղ նա մինչ այդ մուտք էր գործել միայն ու միայն ուրախանալու՝ սրան ու նրան խանգարելու համար: Եվ ահա կմախքից առաջացած սարսափը վանելու և դրսից չնկատվելու համար, երբ ուզեց սեղմել սեղանիկի վրա գտնվող փոքրիկ լուսամփոփի կոճակը՝ ոչ թե սխալմամբ, այլ՝ որովհետև չգիտեր, թե ինչ



է անում, սեղմեց մի ուրիշ կոճակ, որ միացած էր փոր ձանոթով ծանրաբեռնված մի էլեկտրական սալիկի: Փորձանո՞թ, բայց ի՞նչ փորձանոթ: Հազիվ էր նա սեղմել կոճակը և արդեն զարմանում էր, թե ինչու լույսը չի վառվում, երբ սենյակն սկսեց լցվել սրտխառնուք պատճառող հոտած ձվի հոտով... Թշվառականը (ինչպես կասեին Վիկտոր Հյուգոն ու Րաֆֆին, որտեղի՞ց պիտի իմանար, որ սալիկի վրա գտնվող անոթում կա $FeS + H_2SO_4$ խառնուրդը, որից՝ տաքացնելիս անջատվում է $H_2S$ հոտած ձվի հոտով ծծմբաջրածին գազը... Իսկապես թշվառակա՞ն (այդ արդեն ես եմ ասում) ուզելով իմանալ այդ զարշելի հոտի պատճառը, նա շոշափելով բաց արեց կից սեղանիկի վրա գտնվող $N_2O$ ազոտի ենթօքսիդով լի անոթի կափարիչը, ենթօքսիդ, որին «ծիծաղեցնող գազ» էլ են անվանում... Դե ի՞նչ ծիծաղելու ժամանակ էր, սակայն թշվառականը (իսկապես թշվառականը...) իրենից անկախ սկսեց ծիծաղել, բայց ծիծաղում էր համարյա լաց լինելով, ինքն իր անհասկանալի ծիծաղից գլուխը կորցրած, երբ ընկավ մի նոր, ավելի ահավոր փորձանքի մեջ: Այսպես, երբ նա ծիծաղից ազատվելու համար, նեանդերթալյան մարդու պես ձեռքերն առաջ գցած, օրորվելով դեսուդեն էր կարկվում խավար լաբորատորիայում, անզգուշաբար, երկու ձեռքով սեղմեց Լեյդենյան շշեր և հակառակ ուղղությամբ պտտվող երկու սկավառակներ ունեցող էլեկտրոստատիկ մեքենայի լիցքավորված գնդիկները և էլեկտրական մի սոսկալի ցնցումից այնպես դեն շպրտվեց, որ երկու-երեք րոպեից ավելի անշարժ փռվել էր փորձանոթներով ծանրաբեռնված սեղանի տակ... Բայց այստեղ նրա բախտը իսկապես որ բերեց, որովհետև, ինչպես պատմում են՝ այդ մեքենան հնարող գիտնականը նման մի հարվածի ենթարկվելով՝ մի օրից ավել էր, ինչ ուշքի չէր գալիս... Հետո նա, իհարկե, ձվի զարշելի հոտի և իր դառն վիճակի վրա լաց լինելու փոխարեն դեռ երկար ծիծաղում էր անձայն մի ծիծաղով: Բայց դա էլ անցավ, ինչպես նախորդող արկածներն անցան, որից հետո, ինչպես դառը փորձություններից անցած միջնադարյան մի ասպետ, բազմաչարչար գլուխը ձեռքերի մեջ առած, նա տխուր կուչ էր եկել լաբորատորիայի մի անկյունում՝ վահանի փոխարեն պայուսակը կրծքին սեղմած...

Քիչ հետո նա քնած էր: Առնետ Սուրիկը դունչը ցցած նստել էր նրա կողքին և այնպիսի մի զարմանքով էր նայում նրան, ինչպես առավոտյան առաջին դասին իսկ լաբորատորիա մտած ութերորդ դասարանցիները: Նրանցից մեծ մասը չէր ճանաչում նրան, որովհետև Ավագը, ինչպես գիտեք, երկրորդ հերթից է: Եվ, ապա, եթե տեսած էլ լինեին, ինչպե՞ս ճանաչեին՝ այնքան էր նա կերպարանափոխվել: Միայն Սիմոնյան Անիկը, որ նրանց հարևանն է, հանկարծ կռացավ, նայեց, նայեց ու՝

— Վայ, սա հո մեր հարևան Բարսեղյանենց տղա՞ն է, որի մասին մի պատմվածք կար «Պիոներ»-ում...

Անիկի ձայնի վրա Ավագը բաց արեց աչքերը, մի պահ զարմացած նայեց վեր, իր գլխին հավաքվածներին ու... ոտքի թռավ...

[1] Հենց այս պատճառով էլ «Հանձին» ասացի քիչ առաջ. առնետին տվել էին նստարանները փչացնող, եղունգներով փորփրող հայտնի Սուրիկի անունը:

Ես էլ ձեզ չեմ պատմի մնացյալը. ինքներդ երևակայեցեք շարունակությունը: Ութերորդ դասարանցիներ ու նրանց առջև՝ քնահարամ եղած, գզգզված, փոշոտ մազերով, մանուշակագույն դեմքով մի սարսափելի էակ, որի անունն է Ավագ Բարսեղյան...

Հիմա գիտեմ, շատերը կասեն, թե հնարովի բան է, բայց ոչ մի հնարովի բան. և չկարծեք, թե մեծ հաճույքով եմ գրել այս բոլորի մասին: Սիրտս ցավելով եմ գրել: Ու թեև շա՜տ եմ վշտացել Ավագից, սակայն խոսք եմ տալիս՝ եթե նա արժանի լինի լավին, ինչքան էլ գլուխ քորելու ժամանակ չունենամ՝ գրել այն պատմվածքը, որ պիտի կոչվի՝

ԹԵ ԻՆՉՊԵՍ ԱՎԱԳ ԲԱՐՍԵՂՅԱՆԸ ԴԱՐՁԱՎ ԳԵՐԱԶԱՆՑԻԿ

Ես իմ ասելիքը վերջացրի:
Հիմա հերթը նրանն է:

# ՇԵԿ ՄԻՆԱՍՆ ՈՒ ԴԻՄԱԿՆԵՐԸ

ԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Նկ. ԲԱԳՐԱՏ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

Դուք չգիտե՞ք մեր Մինասին,
Լսեք, պատմեմ նրա մասին:
Մեր դրացու տղան է նա,
Կամաց խոսեք՝ թող չիմանա:
Դիմակների մի պարկ ունի,
Օր ու գիշեր հանգիստ չունի:
Մեկ տեսնում ես «գայլ» է դառնում,
Գորշ գայլուկի դիմակ դնում
Ու գոռում է.—Գա՜յլ եմ ես, գա՜յլ.
Կհոշոտեմ ոչխար ու գառ:—
Քիչ հետո էլ, տեսար, թաքուն,
Խենթ արջուկի դիմակ հագնում,
Վազ է տալիս,
Պար է գալիս,
Ու գոռում է.—Ա՜րջ եմ ես, ա՜րջ,
Դե, շու՛տ, չոքե՛ք դուք իմ առաջ:—
Մեկ էլ տեսար, սուսիկ-փուսիկ,
Շեկ աղվեսի՝ նազիկ-մազիկ
Դիմակ հագած,
Աղվես դառած,
Օրորվում է, պոչը շարժում,
Իր քույրիկի մազից քաշում
Ու գոռում է.
— Աղվե՛ս եմ ես,
Սիրուն աղվես,
Հեքիաթների աղվեսի պես,
Ես կնանկեմ չալ հավերին,
Կարմրակատար աքլորներին
Ու կտանեմ մութ մի անկյուն,
Անուշ կանեմ
Տատից թաքուն:—
Մեկ էլ տեսար՝ ծաղրածուի
Դիմակ հագած ծռմռվում է
Ու ծայնում է մեծ եղբորը.
— Ի՞նչ ես ցցել դու քո փորը,
Թե չգիտես,
Բռունցքս տե՜ս,
Մի հարվածից
Օդ կցնդես:—
Դե, եղբայրն էլ մեծ չէ այնքան,
Զայրանում է, հրում նրան:
Վայր է ընկնում խեղճ «ծաղրածուն»
Դիմակներն էլ ծեռքից թռչում,
Դիպչում պատին,
Փշրվում են,
Ընկնում գետին:
Եվ, ա՛յ թե ինչ...
Մինասը քաջ,
Որ քիչ առաջ
Անվախ, հզոր
Գայլ էր ու արջ,
Հիմա նստել,
Հոնքը կիտել,
Լաց է լինում լուռ, ա՛ղեկեզ,
Վախկոտ փոքրիկ մկնիկի պես:






# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՆ ՈՒ ՋՐԻԱԿԵՐԸ

*(Հնդկական հեքիաթ)*

Մարդու մեկը ելավ ճանապարհորդելու: Մի ջրիակեր էլ, ինչպես ասում են, կպավ նրա պոչից, դարձավ նրա անբաժան ուղեկիցը: Երեկոյան նրանք մտան մի իջևանատուն գիշերելու, և ճանապարհորդը ջրիակերին ասաց.

— Ահա քեզ փող, բարեկամ: Գնա շուկա, գնիր մի քիչ ալյուր ու միսեռ: Մեզ համար ընթրիք պատրաստենք, ուտենք, որ ուժ հավաքենք ճամփի համար:

— Ես չեմ կարող գնումներ կատարել,— պատասխանեց ջրիակերը: Խանութպանն ինձ կխաբի, ավել փող կվերցնի:

Դե ինչ արած, ճանապարհորդն ինքը գնաց շուկա, ալյուրն ու միսեռը գնեց, իսկ երբ վերադարձավ, դիմեց ջրիակերին.

— Դե, ախպեր ջան, վեր կաց դու էլ ընթրիք պատրաստիր:

Բայց ջրիակերը նորից սկսեց պատճառաբանել.

— Ճիշտն ասած՝ իմ ձեռքից բան չի գալիս, ո՛չ բլիթ թխել, ո՛չ էլ միսեռ եփել: Զուր տեղը կփչացնեմ թե՛ ալյուրը, թե՛ միսեռը:

Ինչ կարող ես անել: Ճանապարհորդն ինքը գործի անցավ, միսեռ եփեց, բլիթ թխեց: Ընթրիքը պատրաստեց ու դարձավ ջրիակերին.

— Լսի՛ր, ախպերս, ես գնում եմ լվացվեմ և երեսս սափրել տամ: Մինչև իմ գալը դու սփռոցը փռիր և դասավորիր ինչ որ պետք է:

— Հավատացնում եմ քեզ, որ անարարության հետ ես բոլորովին գլուխ չունեմ,— կրկին խորամանկեց ջրիակերը:

Խեղճ ճանապարհորդն ինքը փռեց սփռոցը, հացն ու ճաշը դրեց և ասաց.

— Դե արի, արի հաց ուտենք:

Ջրիակերն իսկույն ոտքի կանգնեց ու ասաց.

— Վկա է աստված, որ ես խիստ անհարմար վիճակի մեջ եմ: Բայց ինչպե՞ս կարող եմ մերժել քո հրավերը: Պիտի աղ ու հաց ուտեմ քեզ հետ գոնե մի անգամ...

Եվ փառք տալով աստծուն, ջրիակերն սկսեց խժռել բլիթն ու միսեռը:

Իսկ ճանապարհորդը վերջապես հասկացավ իր սխալը, զղջաց և երդվեց մտքի մեջ. «Ում-ում, բայց այդպիսի ուղեկցի հետ այսուհետև ոչ մի անգամ ճամփա չեմ գնա»:

Լինի ճանապարհին, լինի տանը, վատ է այն ընկերը, որն ամբողջ գործը քեզ վրա է գցում:

*Ռուս. թարգմ. ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆԸ*



№ 2 ՄԱՅԻՍ 1967

ՀԱՐԳԵԼԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Ես ցանկանում եմ նամակագրական կապ հաստատել հայ երեխաների հետ:
Իմ հասցեն՝

*Харьковская обл., Шевченковский р-н, пос. Шевченково, Шевченковская ср. школа, Болоховой Ольге*

Դրուժինան ունի «Սահմանապահների պատանի բարեկամների» ակումբ: Մենք նամակագրական կապ ենք պահպանում Իբիշի սահմանապահ և Վոլգոգրադի N զորամասի մարտիկների հետ: Դրուժինայի հավաքույթներին միշտ մասնակից ենք դարձնում կոմերիտական վետերաններին և Հայրենական պատերազմի մասնակիցներին:

Դրուժինան պատրաստել է ֆոտոստենդ նվիրված Սովետական բանակին և ֆոտոալբոմ նվիրված Հայրենական պատերազմի մասնակիցներին: Այդ ուղղությամբ գովելի աշխատանք են կատարում Տ. Պետրոսյանի անվան ջոկատի պիոներները:

ԻՎԱՆՅԱՆ ՎԱՐԴԻԹԵՐ
*Ամասիայի միջն. դպրոցի ավագ ջոկատավար*

## ՀԵՏԱՔՐՔԻՐ ՊԱՐԱՊՄՈՒՆՔ

Աշխարհագրական խմբակի պարապմունքին մենք պատրաստել էինք փյունիկյան մի մեծ արմավենի, որից կախել էինք իսկական արմավներ. փոքրիկ լճակում լող էր տալիս ռետինե կոկորդիլոսը. կատարում էինք աֆրիկյան ժողովուրդների երգեր ու պարեր: Այդ օրը շատ հետաքրքիր տեղեկություններ իմացանք Աֆրիկայի մասին, որին նվիրված էր մեր պարապմունքը:

ԱՅՆԱՋՅԱՆ ԱՄԱԼՅԱ
*Երևանի 32-րդ դպրոց, 6-րդ դաս.*

*Սովորում եմ Ա. Բակունցի անվան 8-ամյա դպրոցի 4-րդ դասարանում: Մեր դրուժինան կրում է Զոյա Կոսմոդեմյանսկայայի անունը: Վերջերս մենք կազմակերպել էինք հավաքույթ՝ նվիրված Զոյայի և նրա ընկերների կատարած սխրագործություններին: Մենք՝ պիոներներս պարտավոր ենք չմոռանալ նրանց, որովհետև նրանք իրենց կյանքը զոհել են մեզ համար, մեր երջանիկ կյանքի համար:*



ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ ԱՐԵԳ
*Սիսիանի շրջ. Լորի 8-ամյա դպրոցի 4-րդ դաս. աշակերտուհի*

## ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՁԵՌՔԵՐՈՎ

Անցյալ տարի, սեպտեմբերից մեր դպրոցում կազմակերպվել է Հայրենական պատերազմում զոհված մեր համագյուղացիների հիշատակին նվիրված մի անկյուն: Այնտեղ, նրանց նկարների տակ նշված է ամեն մեկի ծննդյան թիվը, կենսագրությունը: Գյուղացիները գոհ են դպրոցի դրուժինայից, որ այդպիսի շնորհակալ գործ է կատարել:

ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ ՄԱՅԻՍ
*Արտաշատի շրջան, Մխչյանի միջն. դպրոց*



## ՄԵՐ ՆՈՐ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

Արդեն մեկ տարի է, ինչ մենք բարեկամական կապ ենք հաստատել հեռավոր Լիտվայի Վիլկանիվշկսկայա շրջանի պիոներների հետ: Մենք շատ բան գիտենք մեր հեռավոր բարեկամների մասին: Նրանք մեզ ուղարկել են իրենց օրգան՝ «Լիտվայի պիոներ» թերթը, փոխանակել ենք գրքեր, հուշանվերներ, լուսանկարներ և այլն: Լիտվացի պիոներները գիտեն մեր շրջանի պատմությունը, մեր արևավառ Հայաստանի մասին:

Իսկ գիտե՞ք, թե ով է հիմք դրել այդ բարեկամությանը՝ Անուշիկ Մկրտումյանը: Նա մեր դրուժինայի խորհրդի նախագահն է և սովորում է մեր դասարանում: Վերջերս էլ Անուշիկը եղավ Արտեկում:

Մենք որոշել ենք բարեկամական կապ հաստատել նաև Չեխոսլովակիայի պիոներների հետ:

ՕԹԱՐՅԱՆ ԱՐՄԻԿ
*Իջևանի 2-րդ միջն. դպր. Յու. Գագարինի անվան ջոկատի խորհրդի նախագահ:*

ԻՆՉՈՒԿ

ՀԵՏԱՔՐՔՐԱՍԵՐՆԵՐԻ ԱԿՈՒՄԲ

ԻՆՉՈ՞Ւ, Ե՞ՐԲ, ՈՐՏԵ՞Ղ

# SOS-Ը ՓԱԿ ՇՇԻ ՄԵՋ

«Ով ծովում կամ ծովափին կընքված շիշ գտնի և բաց անի, նա մահապատժի կենթարկվի». այսպես էր ասվում այն օրենքում, որը գոյություն ուներ Անգլիայում 250 տարի և վերացվեց միայն անցած դարի սկզբին: Այդ օրենքով 1560 թվականին մահապատժի ենթարկվեց Դուվրի մոտ գցված շիշը վերցնող և բաց անող անգլիական ձկնորսը, քանի որ ապակյա անոթում մի տոմսակ կար, որը շատ կարևոր քաղաքական գաղտնիք էր պարունակում: Այդ ողբերգական դեպքից հետո թագուհին մի հատուկ մարդ նշանակեց ալիքների դուրս նետած շշերը բացելու համար, և միայն նա այդ իրավունքն ուներ:

Օրենքը, ինչպես տեսնում եք, շատ դաժան էր, բայց ուրիշ ելք չըկար—դեռևս չէր հայտնագործված ռադիոն, գոյություն չուներ հեռագիրը, սակայն տեղեկություններ հայտնելու ոչ մի ուրիշ հնարավորություն չկար, ստիպված էին վըստահել օվկիանոսի ալիքներին:

Սակայն ոչ միայն գաղտնիքներն էին կնքվում շշում: 1928 թվականին գերմանական մի նավի խոհարար ցանկացավ շշային փոստի օգնությամբ սեր բացատրել իր սիրած աղջկան, ալիքները հափշտակեցին խոհարարի գաղտնիքը և դուրս նետեցին ավելի քան 20 տարի անց՝ Անգլիայի ափերի մոտ: Սակայն դժբախտաբար աղջիկը վաղուց արդեն ամուսնացել էր. օվկիանոսային փոստը դավաճանեց:

Զարմանալի ոչինչ չկա, որ այդպիսի տարօրինակ ձևով ուղարկված լուրերը հաճախ մարդկանց չեն հասնում, որքան էլ այդ շշերը ամուր փակված լինեն: Վերջ ի վերջո նրանք ընկղմվում են, իսկ երբեմն էլ դիպչելով ժայռերին և առափնյա քարերին, ջարդվում են: Բացի այդ, շշերի երթուղին լրիվ կախված է օվկիանոսի քմահաճ հոսանքներից:

Այսպես, 1784 թվականին Խաղաղ օվկիանոսում խորտակված ճապոնական նավի անձնակազմը կարողացավ դուրս գալ անմարդաբնակ Մարկանե կղզին: Նավաստիներն իրենց դժբախտության լուրը հաղորդեցին մարդկանց միակ հնարավոր միջոցով, առանց սնդի սպասելով փրկության:

Նավաստիների շշով ուղարկված խնդրանքը գտան Ճապոնիայի ափերի մոտ, սակայն շատ տարիներ հետո... 1935 թվականին:

Ի դեպ, ոչ միայն խորտակվող, այլև կատակասեր մարդիկ են դիմում հաղորդման այս միջոցին: Այդ հնարավորությունն օգտագործում են նաև գիտնականները: Հինավուրց այդ ձևը մինչև այսօր էլ պիտանի է ծովային հոսանքները՝ նրանց ուղղությունը, ուժը ուսումնասիրելու համար: Այսպես, 18-րդ դարի վերջում ճշտվեցին Հյուսիսային ծովի հոսանքների ուղղությունները, իսկ Համաշխարհային 2-րդ պատերազմից հետո օվկիանոսային փոստի օգնությամբ մասնագետները ուսումնասիրեցին խարիսխներից պոկված և շրջմոլիկ դարձած ճապոնական ականների շարժման ուղղությունը:

Շատ երկրներում գոյություն ունեն իսկական ակումբներ, որոնք մրցում են իրար հետ, թե ով ավելի շատ ծովային «ուղերձներ» կորսա: Եվ իզուր չէ, որ այդ ակումբները գոյություն ունեն, որովհետև օվկիանոսը իր ալիքների գրկում դեռևս պահպանում է լողացող շատ հին գաղտնիքներ:

Մեր երկրում գտնված բոլոր ապակյա անոթների հաշվառումը տանում է օդերևութային ծառայության գլխավոր վարչությունը:




Ամենքին հայտնի է, որ երկրային օրը հավասար է 24 ժամի, ժամը՝ 60 րոպեի, րոպեն՝ 60 վայրկյանի։

Իսկ արդյո՞ք դա հարմար է։

— Ոչ, հարմար չէ,—պնդում է անգլիական «Նյու-Սայենտիստ» հանդեսի ընթերցողներից մեկը։

Եվ ահա թե նա ինչ է առաջարկում. օրը բաժանել 10 ժամի, ժամը՝ 100 րոպեի, րոպեն 100 վայրկյանի։ Ի միջի այլոց 10 ժամ 00 րոպեն պետք է համապատասխանի այժմյան 24 ժամ 00 րոպեին (Գրինվիչի ժամանակով)։ Ուշադրությամբ նայեցեք նկարներին. ժամացույցները պատկերված են նոր թվացույցով։ Տեսքը շատ անսովոր է, ասես անմիտ բան լինի։ Բայց միշտ էլ նորը միանգամից չէ, որ դուր է գալիս։ Րոպեն ցույց տվող սլաքը մեկ լրիվ պտույտ կատարում է ոչ թե 60, այլ 100 րոպեի ընթացքում։

Այս առաջարկության հեղինակը գտնում է, որ դա ավելի հարմար է։ Հիմա ժամը ասելիս պետք է ավելացնել նաև «ցերեկվա» կամ «գիշերվա» բառերը։ Նոր սիստեմին անցնելիս դրա անհրաժեշտությունը չի լինի։ Բավական է ասել 2-ն անց 50 րոպե, որպեսզի հասկանանք, որ խոսքը վերաբերում է առավոտյան ժամը 6-ին։

Հեղինակը նույն սկզբունքն է առաջարկում կիրառել նաև Երկրի շրջագիծը բաժանելիս. 360 աստիճանի փոխարեն 1000 միավոր, որոնք կարելի է համարել անկյունային րոպեներ։ Եվ այդ ժամանակ կստացվի, որ երկարության 1 րոպեն հասարակածում հավասար կլինի ժամանակի 1 րոպեին (նոր սիստեմին անցնելիս օրը ունենալու է 1000 րոպե)։ Երկրի շրջագիծը (հասարակածով) հավասար է 40.000 կիլոմետրի։ Ուրեմն երկարության մեկ րոպեն կազմում է 40 կիլոմետր։

Նման մոտեցումը կհեշտացնի ժամանակի որոշումը երկրագնդի ցանկացած վայրում։ Օրինակ՝ Քենիայի մայրաքաղաքը գտնվում է Գրինվիչից 4000 կմ դեպի արևելք։ Նշանակում է այդ քաղաքում տեղական ժամանակը մեկ ժամով առաջ է Գրինվիչից։ 4000 կիլոմետրը բաժանած 40 կիլոմետրի, կստացվի 100 րոպե, այսինքն՝ 1 ժամ։

**Իսկ դուք ի՞նչ եք կարծում. երեխաներ. խելացի՞ է արդյոք այդ առաջարկը։ Գրեցեք մեզ այդ մասին։**



ժ. 10-ը = գիշերվա 12-ին

ժ. $2^{50}$-ը = առավոտյան ժ. 6-ին

ժ. 5-ը = ցերեկվա ժ. 12-ին

ժ. $7^{50}$-ը = երեկոյան ժ. 6-ին

# ՈՐՏԵՂ Է ԱՇԽԱՐՀԻ ՈՍԿԻՆ

Ամենուրեք ոսկին թափված է մեր ոտքերի տակ: Վերցրու մի բուռ ջուր, և ոսկին ափիդ մեջ է: Իսկ ինչո՞ւ միայն ոսկի, նաև արծաթ, պլատին, ուրան, մոլիբդեն, վանադիում, ստդիկ... գետի սովորական ջուրը այդ բոլոր մետաղներից մի քիչ պարունակում է իր մեջ:

Հազարամյակներ շարունակ գետերը քայքայում են ապարները և երկրի ընդերքի անգնահատելի գանձերը տանում են դեպի ծովերը ու օվկիանոսները: Հազվագյուտ մետաղներով առանձնապես հարուստ են Սիբիրի գետերի ջրերը: Այնտեղ մեկ խորանարդ մետրը ջուրն իր մեջ պարունակում է մինչև 0,18 մգ ոսկի: Մյուս մետաղների քանակությունն ավելի շատ է: Եվ պատահական չէ, որ այդ գետերի ոսկու պաշարները հետաքրքրում են գիտնականներին: Սակայն այդ գանձերը դուրս բերելու համար պետք է գոլորշիացնել ծովը: Իսկ դա ավելի թանկ կնստի: Ստիպված ենք հաշտվել այն դրության հետ, որ ոսկին հոսի դեպի ծովերն ու օվկիանոսները:

«Մի՞թե վատ բան է, որ ոսկին հոսում է դեպի ծովը,— իրենց հարց տվեցին գիտնականները,— արդյո՞ք այն կորած է ընդմիշտ»: Եվ այն եզրակացությունը, որին հանգեցին նրանք, շատերի համար անսպասելի էր:

Քիմիական վերլուծության ենթարկելով ծովի ջուրը, գիտնականները մեկ խորանարդ մետր ջրում հայտնաբերեցին 0,008 մգ ոսկի: Իսկ գետի նույնքան ջրում ոսկին ավելի շատ է՝ 0,18 մգ: Կորուստը կազմում է 0,172 մգ: Ուրեմն բոլոր ծովերում ու օվկիանոսներում միասին վերցրած այդ կորուստը կազմում է 225 միլիարդ տոննա ոսկի: Բայց ու՞ր կարող է կորչել այդ ոսկին: Բնությունն այն պահել է իր թաքստոցում:

Եվ այդ թաքստոցները որոնելու համար հարկ չեղավ կազմակերպել երկրաբանական հետազոտություններ: Ամեն ինչ լուծվեց լաբորատոր սեղանների վրա: Գիտնականները մտաբերեցին, որ դեռևս 1911 թ. ավստրիացի քիմիկոս Ռիխարդ Զիգմունդին նկատել էր մի հետաքրքրական երևույթ: Ոսկու մասնիկներ պարունակող ջրին ավելացնելով կերակրի աղի լուծույթ, նա տեսել էր, որ ոսկին նստվածք է տալիս: Ստուգեցին, և դա ապացուցվեց: Ոսկու մանրագույն մասնիկները, որ համաչափ ցրված էին ջրում, կերակրի աղի ներգործությամբ կորցրին իրենց հավասարակշռությունը, ծանրացան և իջան սրվակի հատակը:

Իսկ ի՞նչ բան է ծովի ջուրը: Դա նույն աղի ջուրն է: Դուրս է գալիս, որ բնության այդ գաղտնարանները գտնվում են ծովերի և օվկիանոսների հատակին:



Մնում է միայն գտնել այդ թանկարժեք հանքավայրերը և դուրս բերել ոչ միայն ոսկին, այլև մյուս հազվագյուտ մետաղները: Բայց դա այնքան էլ հեշտ չէ: Դժվարությունը ոչ այնքան ոսկին հանելու, որքան հանքավայրի տեղը որոշելու մեջ է: Ոսկու մասնիկները տարբեր զանգվածներով ու տեսակարար կշիռներով կարող են նստվածք տալ ջրաշերտերի միացման տեղից տարբեր հեռավորության վրա: Բացի դրանից գետային ջրերի սահմանները գտնվում են ծովափից շատ հեռու: Օրինակ, Ամազոն գետը ծովի խորքն է «գնում» մինչև 120 կմ: Ուրեմն առանց երկրաբանական հետազոտության գործը գլուխ չի գա: Բայց որոնումները մեծ եկամուտ են խոստանում. ծովի հատակից ոսկին կարելի է հանել ամենաէժան միջոցներով: Ծանծաղ տեղերից հողը կարելի է հանել նույնիսկ էքսկավատորներով:

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

5
ՄԱՅԻՍ
1967

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Ռ.

**„Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06։*

*ՎՖ 06413։ Պատվեր՝ 512։ Տպաքանակ՝ 42000։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 16/V 1967 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91։*

Գինը՝ 10 կ.





## ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԻՆ

### ԺԱՄԱՆՑ «ՏԻԵԶԵՐՔ»

*1. Սառատեսակ։ 2. Մոլորակ 3. Զինվորական կոչում։ 4. Նահանգ՝ ԱՄՆ-ում։ 5. Համանուն գետ և պետություն՝ Արևմտյան Աֆրիկայում։ 6. Վայր, որտեղ տեղի է ունեցել Վարդանանց պատերազմը։ 7. Լիճ՝ Հունգարիայում։ 8. 19-րդ դարի ռուս գրող։ 9. Արվարձան՝ Լոնդոնի արևելյան մասում, որտեղ կա աշխարհահռչակ աստղադիտարան։ 10. Ս. Խանզադյանի վեպերից։ 11. Քաղաք՝ Լեհաստանում։ 12. Պետություն՝ Հարավային Ամերիկայում։ 13. Հայոց թագավոր։ 14. Անտարկտիդայում ապրող կենդանի։ 15. Ամազոնի վտակներից։ 16. Քաղաք՝ Կանադայում։ 17. 15-րդ դարի ռուս նշանավոր ճանապարհորդ։ 18. Լեռնային սիստեմ Միջին Ասիայում։*

*Հարցերին ճիշտ պատասխանելու դեպքում ընդգծված վանդակաշարքում դուք կկարդաք աշխարհահռչակ մի մարդու մասնագիտությունը և ազգանունը։*

*Առաջարկ ԼԻԴԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ*





## ԽԱՉԲԱՌ-ԲԱՌԱՇՂԹԱ

1. Սպորտային խաղ։ 2. Օր գետի վտակներից։ 3. 7-րդ դարի հայ գիտնական։ 4. Պետություն՝ Եվրոպայում։ 5. Երիտասարդական բերդ՝ Հայաստանում։ 6. Քաղաք՝ Գերմանիայում։ 7. Գործող անձ Գ. Սունդուկյանի պիեսներից։ 8. Հայկական օպերա։ 9. Կղզի՝ Խաղաղ օվկիանոսում։ 10. Հայ գրող, հեղափոխական-դեմոկրատ։ 11. Քաղաք՝ Չինաստանում։ 12. Հաղորդակցության միջոց։ 13. Սովետական նշանավոր ջութակահար։ 14. Չեխ կոմպոզիտոր։ 15. Ալ. Շիրվանզադեի պատմվածքներից։

*Կազմեց Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆԸ*

## Հանելուկներ

*Բնակվում է անտառում,*
*Քթին եղջյուր է կրում,*
*Սիրում է տիղմ, ցեխ ու ջուր,*
*Կոչվում է նա...*

*Ինքը փոքրիկ կծիկ է,*
*Բույնն էլ բույն չէ, խցիկ է,*
*Թեև ունի նա ականջ,*
*Բայց չի լսում ոչ մի կանչ։*

*ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ*

## Աշխարհագրական պատկերներ

**Յուրաքանչյուր նկարում թույլ է տրված աշխարհագրական մեկ սխալ։ Կարո՞ղ եք ասել, թե ինչ սխալներ են դրանք։**



ԲԵՎԵՌ



ՎԵՆԵՏԻԿ



ԵԳԻՊՏՈՍ



ՕԱԶԻՍ՝ ՍԱՀԱՐԱՅՈՒՄ



Ծաղիկներ

ԵՐԻՑՅԱՆ ՌԻՏԱ
Բաղրամյանի շրջ., գյուղ Մաթխա, 4-րդ դաս.



Մեր բակը

ՍԱՖԱՐՅԱՆ ՆԱՐԻՆԵ –
Երևան, Մաշտոցի անվ. դպր., 3-րդ դաս.



Մեր գյուղը
ՄԿՐՏՉՅԱՆ ԱՐՆՈ
Շուշիի շրջ., գյուղ Կիրով,
Լեռնային Ղարաբաղ



Մեր տունը

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ՖԼՈՐԱ
Վեդու շրջ., գյուղ Արմաշ



Բնանկար

ՂՈՒՄԱՇՅԱՆ ՍՈՒՍԱՆՆԱ
Գորիս. Բակունցի անվ. դպր., 5 րդ դաս.